Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՛ք



Հ Կ (Բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՅԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 8 (86)

Հայկական ԽՍՀ ԺԿԽ-ին կից «ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
Հրատարակչություն, ՅԵՐԵՎԱՆ—1940 թ.

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 70-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

# ԼԵՆԻՆԻ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԸ ՄԱՐՄՆԱՎՈՐՎԱԾ ԵՆ ԿՅԱՆՔՈՒՄ

## I

*Մարքսը և Էնգելսն առաջինը բացահայտեցին հասարակական զարգացման օրենքները, դասակարգային պայքարի օրենքները, առաջինը սոցիալիզմի մասին ուսմունքը ուտոպիայից վերածեցին գիտության: Զարգացնելով մարքսիզմը պատմական նոր պայմաններում, Լենինն այն բարձրացրեց նոր աստիճանի, պրոլետարիատին և նրա ավանգարդը—կոմունիստա-*

կան կուսակցությունը զինեց այնպիսի գաղափարներով, որոնք ցնցում են կապիտալիստական աշխարհը:

Լենինի կողմից առաջին անգամ բացահայտված և գիտականորեն հիմնավորված թեզիսն մեկ, առանձին վերցրած երկրում սոցիալիզմի հաղթանակի մասին, —սոցիալիստական հեղափոխության, պրոլետարիատի դիկտատուրայի թշնամական, կապիտալիստական շրջապատման պայմաններում սոցիալիստական հասարակարգի կառուցման հիմքն է հանդիսանում:

Լենինը մեկ երկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության մասին իր հանճարեղ հետևությանը հանգեց խոր վերլուծման ենթարկելով իմպերիալիզմի դարաշրջանը և կապիտալիզմի հակասությունները, որոնք հատուկ են այդ դարաշրջանին:

Ի՞նչպես էին մտածում պրոլետարական հեղափոխության հաղթանակի հարցին պրոլետարիատի հեղափոխական գիտության հիմնադիրները՝ Մարքսն ու Էնգելսը: Ի՞նչ հետևության հանգեցին նրանք վերլուծման ենթարկելով կապիտալիզմի մինչմոնոպոլիստական ստադիան: Ուսումնասիրելով կապիտալիզմը, նրան հատուկ



բոլոր հակասություններով, Մարքսը և Էնգելսն ապացուցեցին կապիտալիզմի անխուսափելի կործանումը, պրոլետարական հեղափոխության անխուսափելիությունը, ապացուցեցին, որ անհրաժեշտ է կապիտալիզմի, որպես անտեսության պատմականորեն անցողիկ սիստեմի փոխարինումը նոր, ավելի բարձր հասարակարգով—կոմունիզմով:

Մարքսն ու Էնգելսը պրոլետարիատին սովորեցնում էին, որ կապիտալիզմի և կոմունիզմի միջև ընկած է անցման ժամանակաշրջանը, որ այդ ժամանակաշրջանի պետությունը չի կարող լինել ոչ այլ ինչ, քան պրոլետարիատի հեղափոխական դիկտատուրա:

Գիտականորեն ապացուցելով կապիտալիզմի անխուսափելի կործանումը, Մարքսը և Էնգելսը գտնում էին, սակայն, որ պրոլետարական հեղափոխությունը չի կարող հաղթել մեկ, առանձին վերցրած երկրում, որ այդպիսի հեղափոխությունը կարող է միայն կատարվել միաժամանակ բոլոր կամ, համենայն դեպս, կապիտալիստական հիմնական երկրներում:

Մարքսի և Էնգելսի հետևությունը մեկ երկրում սոցիալիզմի հաղթանակի անհնա-

րինության մասին, տարածվում էր կապիտալիզմի մինչմոնոպոլիստական ստադիայի ժամանակաշրջանի վրա միայն, յերբ կապիտալիզմը զարգանում էր վերամբարձ գծով: Մարքսի և Էնգելսի հետևությունը մասաչափ անգամ չէր բացառում սոցիալիզմի հաղթանակի հարցի նոր դրվածքը պատմական նոր պայմաններում:

Մարքսը և Էնգելսը մեկ յերկրում սոցիալիզմի հաղթանակի անհնարինության հետևությանը հանգել եյին վոչ բավարար չափով զարգացած կապիտալիզմի պայմաններում, պրոլետարիատի և բուրժուազիայի միջև վոչ բավականաչափ զարգացած դասակարգային պայքարի պայմաններում: Մարքսի և Էնգելսի դարաշրջանը նախահեղափոխական դարաշրջան էր, յերբ պրոլետարները նոր եյին միայն անցնում հեղափոխության համար նախապատրաստվելու դպրոցը, «Յերբ պրոլետարական հեղափոխությունը դեռևս չէր հանդիսանում ուղղակի պրակտիկ անխուսափելիություն» (Ստալին): Մարքսը և Էնգելսն ապրում եյին կապիտալիզմի աճման դարաշրջանում, յերբ աշխարհը դեռևս վերջնականապես բաժանված չէր, յերբ կապիտալիզմը համեմատաբար «սահուն կերպով» ու «խաղաղ» տարածվում էր ամբողջ յերկրագնդի վրա, յուրացնելով նորանոր տերիտորիաներ, յերբ պայքարը հանուն աշխարհի բաժանման չէր տանում անպայմանորեն դեպի զինված կոնֆլիկտներ ու ռազմական աղետներ:



## II

19-րդ դարի վերջերին և 20-րդ դարի սկզբներին կապիտալիզմն անցավ իր զարգացման նոր, բարձրագույն ու վերջին ստադիային, դարձավ իմպերիալիստական կապիտալիզմ: Խորը կերպով ու բազմակողմանիորեն ուսումնասիրելով կապիտալիզմի զարգացման այդ ստադիան, Լենինը յեկավ այն հետևությանը, վոր իմպերիալիզմը պարազիտային, նեխող ու մեռնող կապիտալիզմն է, սոցիալիստական հեղափոխության նախօրյակը: Կապիտալիզմն իր զարգացման այդ ստադիայում պրոգրեսիվ լինելուց դարձավ ռեակցիոն, այն արգելակ դարձավ արտադրողական ուժերի հետագա զարգացման ճանապարհին:

Կապիտալիզմի անցումով զարգացման մոնոպոլիստական ստադիային, աշխարհի

բաժանումն ավարտվեց: Իմպերիալիստական յերկրների պայքարը շուկաների համար, կապիտալների ու ապրանքների արտահանման տերիտորիաների համար, հումքի աղբյուրների համար, ընդունեց սուր բնույթ: Իմպերիալիստական վորոշ յերկրների ձգտումը՝ ստանալու նոր գաղութներ, նոր շուկաներ և հումքի աղբյուրներ, հանդիպում եր իմպերիալիստական այլ յերկրների համառ դիմադրությանը, վորոնք ձգտում եյին իրենց ձեռքում պահել կողոպտած հողերը: Այստեղից ել՝ պատերազմների անխուսափելիությունն իմպերիալիզմի դարաշրջանում: Այդ կարգի պատերազմները, հանդիսանալով իմպերիալիզմի հակասությունների արդյունք, տանում են դեպի կապիտալի ճակատի թուլացումը, առաջացնում են հեղափոխական խոր ճգնաժամեր, վորոնք ցնցում են իմպերիալիզմի ամբողջ սիստեմը:

Կապիտալիզմի զարգացումն իմպերիալիզմի դարաշրջանում ընթանում է վերին աստիճանի անհամաչափ, թռիչքաձև: Կապիտալիզմի տնտեսական ու քաղաքական զարգացման անհամաչափությունն իմպերիալիզմի դարաշրջանում, ընդունեց չափազանց սուր ձևեր, դարձավ կապիտա-



լիստական ճակատի քայքայման վճռական գործոնը:

Լենինն առաջինը բացահայտեց կապիտալիզմի տնտեսական ու քաղաքական զարգացման անհամաչափության որենքը, վորը խիստ կերպով սրվում է իմպերիալիզմի դարաշրջանում: Յելնելով այդ որենքից Լենինը հիմնավորեց այն հետևությունը, վոր հնարավոր է սոցիալիզմի հաղթանակն սկզբում մի քանի կամ նույնիսկ մեկ, առանձին վերցրած յերկրում և վոր անհնարին է սոցիալիզմի միաժամանակ հաղթությունը բոլոր յերկրներում: Այդ՝ իմպերիալիզմի դարաշրջանում սոցիալիստական հեղափոխության նոր, լիավարտ թեորիան եր: Այդ թեորիայի հիմունքները Լենինի կողմից առաջին անգամ շարադրվեցին նրա՝ «Սոցիալ-դեմոկրատիայի յերկու տակտիկան դեմոկրատական հեղափոխության մեջ» աշխատությունում, վորը գրվել է 1905 թվին, իսկ վերջնականապես այդ թեորիան ձևակերպվեց 1915 թվին: «Յեվրոպայի Միացյալ Նահանգների լոզունգի մասին» հոդվածի մեջ Լենինը գրում եր.

«Տնտեսական և քաղաքական զարգացման անհամաչափությունը կապիտալիզմի

բաժանումն ավարտվեց: Իմպերիալիստական յերկրների պայքարը շուկաների համար, կապիտալների ու ապրանքների արտահանման տերիտորիաների համար, հումքի աղբյուրների համար, ընդունեց սուր բնույթ: Իմպերիալիստական վորոշ յերկրների ձգտումը՝ ստանալու նոր գաղութներ, նոր շուկաներ և հումքի աղբյուրներ, հանդիպում եր իմպերիալիստական այլ յերկրների համառ դիմադրությանը, վորոնք ձգտում եյին իրենց ձեռքում պահել կողոպտած հողերը: Այստեղից ել՝ պատերազմների անխուսափելիությունն իմպերիալիզմի դարաշրջանում: Այդ կարգի պատերազմները, հանդիսանալով իմպերիալիզմի հակասությունների արդյունք, տանում են դեպի կապիտալի ճակատի թուլացումը, առաջացնում են հեղափոխական խոր ճգնաժամեր, վորոնք ցնցում են իմպերիալիզմի ամբողջ սիստեմը:

Կապիտալիզմի զարգացումն իմպերիալիզմի դարաշրջանում ընթանում է վերին աստիճանի անհամաչափ, թռիչքաձև: Կապիտալիզմի տնտեսական ու քաղաքական զարգացման անհամաչափությունն իմպերիալիզմի դարաշրջանում, ընդունեց չափազանց սուր ձևեր, դարձավ կապիտալիստական



ճակատի քայքայման վճռական գործոնը:

Լենինն առաջինը բացահայտեց կապիտալիզմի տնտեսական ու քաղաքական զարգացման անհամաչափության որենքը, վորը խիստ կերպով սրվում է իմպերիալիզմի դարաշրջանում: Յելնելով այդ որենքից Լենինը հիմնավորեց այն հետևությունը, վոր հնարավոր է սոցիալիզմի հաղթանակն սկզբում մի քանի կամ նույնիսկ մեկ, առանձին վերցրած յերկրում և վոր անհնարին է սոցիալիզմի միաժամանակ հաղթությունը բոլոր յերկրներում: Այդ՝ իմպերիալիզմի դարաշրջանում սոցիալիստական հեղափոխության նոր, լիավարտ թեորիան եր: Այդ թեորիայի հիմունքները Լենինի կողմից առաջին անգամ շարադրվեցին նրա՝ «Սոցիալ-դեմոկրատիայի յերկու տակտիկան դեմոկրատական հեղափոխության մեջ» աշխատությունում, վորը գրվել է 1905 թվին, իսկ վերջնականապես այդ թեորիան ձևակերպվեց 1915 թվին: «Յեվրոպայի Միացյալ Նահանգների լոզունգի մասին» հոդվածի մեջ Լենինը գրում եր.

«Տնտեսական և քաղաքական զարգացման անհամաչափությունը կապիտալիզմի

անպայմանական օրենքն է։ Դրանից հետևում է, վոր հնարավոր է սոցիալիզմի հաղթանակն սկզբում սակավաթիվ և նույնիսկ առանձին վերցրած, կապիտալիստական մի յերկրում։ Այդ յերկրի հաղթանակած պրոլետարիատն էքսպրոպրիացիայի յենթարկելով կապիտալիստներին և իր մոտ սոցիալիստական արտադրություն կազմակերպելով, վոտքի կելներ մնացած, կապիտալիստական աշխարհի դեմ, իր կողմը գրավելով մյուս յերկրների ճնշված դասակարգերը...»։ (Հատ. 18-րդ, եջ՝ 232—233)։

Լենինի՝ «Պրոլետարական հեղափոխության ռազմական ծրագիրը» հոդվածի մեջ, վորը գրվել է 1916 թվին, տրված է սկզբնապես մեկ կամ մի քանի յերկրներում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության թեորիայի հետագա զարգացումը։

«Կապիտալիզմի զարգացումը,—գրում եր Լենինն այդ հոդվածի մեջ,—տարբեր յերկրներում կատարվում է վերին աստիճանի անհամաչափ։ Այլ կերպ չի ել կարող լինել ապրանքային արտադրության պայմաններում։ Այստեղից բղխում է անխախտ հետևություն, վոր սոցիալիզմը չի կարող հաղթանակել միաժամանակ բոլոր յերկրներում։ Այն կհաղթանակի սկզբում մեկ կամ



մի քանի յերկրներում, իսկ մնացած յերկրները վորոշ ժամանակվա ընթացքում կմնան բուրժուական կամ մինչ բուրժուական։ Այդ պետք է առաջացնի վոչ միայն բախումներ, այլև մյուս յերկրների բուրժուազիայի ուղղակի ձգտում՝ ջախջախելու սոցիալիստական պետության հաղթական պրոլետարիատին։ Այդ դեպքում պատերազմը մեր կողմից կլիներ օրինական և արդարացի։ Այդ կլիներ պատերազմ սոցիալիզմի համար, մյուս ժողովուրդներին բուրժուազիայից ազատագրելու համար»։ (Հատ. 19-րդ, եջ՝ 325)։

Լենինն ապացուցեց մեկ յերկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորությունը և բոլոր յերկրներում միաժամանակ սոցիալիզմի հաղթանակի անհնարինությունը։

«Մարքսիզմի կարիկատուրայի և «իմպերիալիստական էկոնոմիզմի» մասին» աշխատության մեջ, վորը գրվել է 1916 թվի հոկտեմբերի սկզբներին և առաջին անգամ տպագրվել է 1924 թվին «Զվեզդա» ժուռնալում, Լենինը գրում եր, վոր սոցիալիստական հեղափոխությունը չի կարող կատարվել միաժամանակ բոլոր յերկրներում, շնորհիվ կապիտալիզմի անհամաչափ զարգացման, շնորհիվ այն բանի, վոր

«յերկրների մեծամասնությունը և յերկրագնդի բնակչության մեծամասնությունը մինչև այժմ կանգնած են զարգացման դեռ նույնիսկ վոչ կապիտալիստական կամ թե կապիտալիստական աստիճանի ըսկըզբում միայն»: Յերազել բոլոր յերկրներում միաժամանակ սոցիալիզմի հաղթանակի մասին—նշանակում է «սոցիալիզմը հետաձգել մինչև հունական կալենդները, այսինքն՝ մինչև «յերբեք»: (Հատ. 19-րդ, եջ՝ 220—221):

Լենինյան թեորիան սովորեցնում է, վոր իմպերիալիզմի ճակատը կարող է ճեղքվել նրա առավել թույլ ողակում, այնտեղ վորտեղ ավելի շատ են ինչպես ներքին, այնպես և արտաքին հակասությունները, վորտեղ ավելի ուժեղ է զարգացած դասակարգային պայքարը պրոլետարիատի ու բուրժուազիայի միջև, վորտեղ պրոլետարիատը միավորված է, համախմբված և կապիտալի դեմ մղվող նրա պայքարը ղեկավարում է առաջավոր կուսակցությունը, վորը տիրապետում է առաջավոր հեղափոխական թեորիային, վորտեղ պրոլետարիատն իր հետևից է տանում գյուղացիության աշխատավոր մասսաներին: Այսպիսի պայմանների առկայության դեպքում այս



կամ այն յերկրի պրոլետարիատը կարող է տապալել իր ազգային բուրժուազիայի իշխանությունը և սեփական ուժերով կառուցել սոցիալիստական հասարակարգ՝ թշնամական կապիտալիստական շրջապատման պայմաններում:

Լենինյան թեորիան մեկ յերկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության մասին մեծագույն ավանդ հանդիսացավ մարքսիստական գիտության մեջ:

«Ինչ կլիներ կուսակցության, մեր հեղափոխության, մարքսիզմի վիճակը, յեթե Լենինը տեղի տար մարքսիզմի տառի առջև, յեթե նա թեորիական արիություն չունենար մի կողմ նետելու մարքսիզմի հին յեզրակացություններից մեկը, փոխարինելով այն մի նոր յեզրակացությամբ՝ մեկ, առանձին վերցրած, յերկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության վերաբերյալ յեզրակացությամբ, վոր համապատասխանում էր պատմական նոր իրադրությանը: Կուսակցությունը կխարխափեր մթության մեջ, պրոլետարական հեղափոխությունը կզրկվեր ղեկավարությունից, մարքսիստական թեորիան կսկսեր նեխվել: Պրոլետարիատը տանուլ կտար, պրոլետարիատի թշնամիները կշահեյին»:

(«ՀամԿ(բ)Կ պատմության համառոտ դասընթաց», էջ 480, Հայ հրատ.)։

Մեկ յերկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության լենինյան թեորիան փայլուն կերպով արդարացավ։ Մեր յերկրում բոլշևիկների կուսակցության ղեկավարությամբ 1917 թվին հաղթեց սոցիալիստական հեղափոխությունը։ Իմպերիալիզմի ճակատն առաջին անգամ ճեղքվեց ռուսաստանի պրոլետարիատի կողմից։ Ցարական Ռուսաստանն ամենաթույլ օղակը յեղավ իմպերիալիզմի շղթայի մեջ այն պատճառով, վորովհետև այստեղ առավելագույն չափով կենտրոնացած եյին իմպերիալիզմի ներքին ու արտաքին հակասությունները։ Ռուսաստանում գտնվեց ամենահեղափոխական բանվոր դասակարգը, վորին ղեկավարում եր մինչև վերջ կոմունիզմի գործին նվիրված բոլշևիկների կուսակցությունը, բանվոր դասակարգի հետևից գնում եր հեղափոխական գյուղացիությունը։ Ռուսաստանի բանվոր դասակարգը Լենինի-Ստալինի կուսակցության ղեկավարությամբ հեղափոխական ճանապարհով տապալեց իր ազգային բուրժուազիայի իշխանությունը և հաստատեց իր քաղաքական տիրապետությունը։ Մեկ յերկրում



սոցիալիզմի հաղթանակի հնարավորության լենինյան թեորիան բոլշևիկների կուսակցության համար հանդիսանում եր գաղափարական հզոր մի զենք, մեծ կողմնացույց պրոլետարիատի դիկտատուրայի համար, սոցիալիզմի համար մղվող պայքարում։

## III

Մեկ յերկրում սոցիալիզմի հաղթանակի լենինյան թեորիան ցասկոտ գրոհների եր յենթարկվում տրոցկիստների, բուխարինականների, բուրժուական նացիոնալիստների կողմից։ Այդ գրոհները հատկապես սուր բնույթ ընդունեցին Լենինի մահից հետո։ Մարքսիզմի-լենինիզմի թշնամիները, բանվոր դասակարգի ամեն գույնի ու յերանգի թշնամիները ձգտում եյին թաղել մեկ յերկրում սոցիալիզմի կառուցման լենինյան թեորիան, վիժեցնել սոցիալիստական շինարարության գործը, վերականգնել կապիտալիզմը։ Տրոցկիստական-զինովևական այլ դավաճաններն իրենց դավաճանական գործունեյությունը քողարկում եյին կեղծորեն մարքսիզմը վկայակոչելով, դիմակավորվելու համար կառչելով մեկ յերկրում սոցիալիզմի հաղթանակի անհնա-

բինության մասին մարքսիզմի՝ իր դարն
անցկացրած, հնացած դրույթից։

Ընկեր Ստալինը լենինիզմի թշնամիների
դեմ մղվող պայքարում պաշտպանեց լե-
նինյան թեորիան մեկ յերկրում սոցիա-
լիզմի հաղթանակի մասին, հանձարեղ կեր-
պով հիմնավորեց նրա բովանդակությունը,
զարգացրեց նրա բոլոր կողմերը հասարա-
կական զարգացման նոր պայմաններում—
կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի և
հաղթական սոցիալիստական շինարարու-
թյան պայմաններում։ Ստալինյան գաղա-
փարների ամբողջ հարստությունը, այն
ամբողջ նորը, որ ընկեր Ստալինը մտցրել
է մեկ յերկրում սոցիալիզմի հաղթանակի
թեորիայի մեջ, այն աստիճան մեծ է ու
զգալի, որ այդ թեորիան իրավամբ կոչ-
վում է լենինյան–ստալինյան։

Ընկեր Ստալինն ամբողջ ծավալով հիմ-
նավորեց մեկ յերկրում սոցիալիզմի հաղ-
թանակի լենինյան թեորիայի միջազգային
նշանակությունը, անխզելի կապ սահմանեց
սոցիալիստական հեղափոխության մեջ
պրոլետարիատի ազգային խնդիրների և
նրա ինտերնացիոնալ խնդիրների միջև,
առավելագույն պարզորոշությամբ դրեց
այն խնդիրները, որ պետք է լուծի մեր



յերկրի բանվոր դասակարգը կուսակցու-
թյան ղեկավարությամբ, սոցիալիզմի կա-
ռուցման ժամանակաշրջանում։

Կուսակցության 18-րդ համագումարում
տված իր զեկուցման մեջ հենվելով մեր
յերկրում սոցիալիզմի կառուցման փորձի
վրա, ընկեր Ստալինը հիմնավորեց կապի-
տալիստական շրջապատման պայմաննե-
րում մեր յերկրում կոմունիզմի հաղթանա-
կի հնարավորությունը, նշեց կոմունիզմի
հաղթանակի համար պայքարելու կոնկրետ
ուղիներն ու միջոցները, բնորոշեց խոր-
հրդային պետության դերն ու խնդիրները
վոչ միայն սոցիալիզմից կոմունիզմին անց-
նելու ժամանակաշրջանում, այլ և կո-
մունիզմի ժամանակաշրջանում, յեթե
մինչև այդ ժամանակ դեռ պահպանվի կա-
պիտալիստական շրջապատումը։

Ընկեր Ստալինի ուսմունքը մեկ յերկրում
կապիտալիստական շրջապատման պայման-
ներում կոմունիզմի կառուցման հնարավո-
րության մասին, մեծագույն մի ավանդ է
մարքսիզմ-լենինիզմի գանձարանում, մարքս
-լենինյան հեղափոխական գիտության
հարստացումն է ու զարգացումը։

## IV

Հենվելով մեկ յերկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության լենինյան-ստալինյան թեորիայի վրա, մենք հիմնականում կառուցեցինք սոցիալիզմը, վորը մտել է ժողովրդի կենցաղի մեջ:

Մեր յերկիրն առաջինն սկսեց սոցիալիստական հեղափոխությունը, առաջինն ապահովեց սոցիալիզմի կառուցումը և մարդկության համար բաց արեց դեպի յերջանիկ ու հրճվալից կյանքը շարժվելու ուղին, կյանք՝ առանց շահագործողների ու շահագործման: Հաղթահարելով շահագործողների և նրանց գործակալության դիմադրությունը հանձին եսերների, մենշևիկների, բուրժուական նացիոնալիստների, տրոցկիստական-բուխարինական վոճրագործների, բոլշևիկորեն փշրելով նպատակի ճանապարհին յեղած ամեն տեսակի խոչընդոտները, ապրելով քաղցն ու ցուրտը, քաղաքացիական պատերազմի և ոտարերկրյա ինտերվենցիայի ծանր տարիները,— մեր յերկրի ժողովուրդները համառ աշխատանքով կառուցեցին սոցիալիզմի լուսավոր շենքը: Լենին-Ստալինի կուսակցությունը կատարեց հսկայական ստեղծա-



գործական, իր մասշտաբներով տիտանական աշխատանք:

Մարդկության պատմությունը չգիտե աշխատանքի այնպիսի մասշտաբներ, զարգացման այնպիսի տեմպեր, այնպիսի շարժում դեպի առաջ, ինչպիսին տեղի ունի մեր յերկրում: Սոցիալիստական մեծ հեղափոխությունը վարդագույն հորիզոններ բաց արեց մեր յերկրի ժողովուրդների առջև, ազատագրեց նրանց կենսական ուժերը, աշխատանքի, կոմունիստական հասարակարգի կառուցման նրանց կամքը:

Մեր յերկիրը դարձել է բառիս բուն իմաստով անճանաչելի: Ջախջախելով շահագործող դասակարգերին և վերջ դնելով ավերված տնտեսության բոլոր ճյուղերում, մեր յերկիրն անցավ զարգացման այնպիսի ուղի, ցույց տվեց շինարարության այնպիսի մասշտաբներ, վորոնք դժվար են տեղավորվում նրանց գլուխներում, ովքեր սովոր են ամեն բան չափել բուրժուական հասարակության զարգացման տեսակետից, ովքեր չգիտեն մեր յերկրի զարգացման պայմանները, ում համար անմատչելի յե այն շարժիչ ուժերի ճանաչումը, վորոնց կյանքի

յե կոչել սոցիալիստական հեղափոխությունը։

Բանվոր դասակարգի դիկտատուրայի տարիների ընթացքում մեր յերկիրը դարձավ ինդուստրիալ հզոր տերություն, ամենախոշոր սոցիալիստական հողագործության յերկիր, բուռն զարգացող սոցիալիստական կուլտուրայի յերկիր, ժողովրդական տաղանդների ծաղկման յերկիր։ Արտադրության տեխնիկայի և արդյունաբերության զարգացման տեմպերի բնագավառում մենք հասել և անցել ենք կապիտալիստական առավել զարգացած յերկրներից։

Լենինն անսահման հավատում եր մեր յերկրի բանվորների ու գյուղացիների ստեղծագործական ուժերին, վորոնք ընդունակ են ստեղծելու աշխարհում առաջավոր ինդուստրիա, ստեղծելու կապիտալիստական աշխարհից անկախ սոցիալիստական եկոնոմիկա։ Լենինը գիտականորեն ապացուցեց, վոր մեր յերկրում կա այն ամենը, ինչ անհրաժեշտ ե սոցիալիզմի կառուցման համար։

Լենինի պատգամները, Լենինի գաղափարները ելեկտրիֆիկացիայի բազայի վրա յերկրի ինդուստրիալիզացիայի մասին, ի-



րենց հետագա զարգացումն ստացան ընկեր Ստալինի կլասիկ աշխատությունների մեջ։ Ընկեր Ստալինը բազմակողմանիորեն զարգացրեց Լենինի բոլոր դրույթները՝ մեր յերկիրը ինդուստրիալ հզոր տերություն դարձնելու մասին, ստեղծեց յերկրի սոցիալիստական ինդուստրիալիզացիայի ծավալուն պլանը, այն պաշտպանեց կապիտալիզմի տրոցկիստական-բուխարինական ռեստավրատորների, ժողովրդի ամենավոխերիմ թշնամիների դեմ մղված դաժան մարտերում, և հասավ նրա մարմնավորմանը կյանքում։

Լենինյան, մտքի մեծագույն ստեղծագործությունն ե հանդիսանում գյուղացիական մանր տնտեսությունը սոցիալիստական հիմքի վրա վերափոխելու կոոպերատիվ պլանը։ Լենինի կոոպերատիվ պլանը վորն ե՛լ ավելի զարգացվեց ու կենսագործվեց ընկեր Ստալինի կողմից,—գյուղում սոցիալիզմի կառուցման միակ ճիշտ պլանն ե։

Սոցիալիզմի համար մղվող պայքարում մենք արմատապես վերափոխեցինք մեր գյուղատնտեսությունը։ 24,8 միլիոն մանր ու մանրագույն տնտեսությունների փոխարեն, վորոնք հենվում եյին պրիմիտիվ

տեխնիկայի վրա, ստեղծված են 242,4 հազար խոշոր կոլեկտիվ տնտեսություններ, զինված առաջավոր տեխնիկայով:

«Մեր հողագործությունը,—ասաց ընկեր Ստալինը կուսակցության 18-րդ համագումարում,—հետևապես, վոչ միայն առավել խոշոր ու մեքենայացված, ուրեմն նաև առավել ապրանքային հողագործությունն է, այլև ժամանակակից տեխնիկայով առավել հագեցած, քան վորևէ այլ յերկրի հողագործությունը»:

Լենինյան-ստալինյան գաղափարները յերկրի ինդուստրիալիզացիայի և գյուղացիական տնտեսության կոլեկտիվացման մասին— այդ թշնամական կապիտալիստական շրջապատման պայմաններում գտնվող մեկ, առանձին վերցրած յերկրում սոցիալիզմի կառուցման մարտական ծրագիրն է: Լենինը և Ստալինը վոչ միայն գիտականորեն ապացուցեցին մեկ յերկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորությունը, այլև բոլշևիկյան կուսակցության ձեռքը տվին սոցիալիզմի հաղթանակի կոնկրետ պլանը:

## V

Սոցիալիզմի հաղթանակը քաղաքում և



գյուղում փոխեց խորհրդային հասարակության դասակարգային ստրուկտուրան: Շահագործող դասակարգերը լիկվիդացիայի յեն յենթարկված, բանվորները և գյուղացիները դարձել են միանգամայն նոր դասակարգեր, վորոնց նմանը առաջ չգիտեր մարդկության պատմությունը: Արմատապես փոխվել է խորհրդային ինտելիգենցիան: Այս բոլոր փոփոխությունների հետևանքով «սահմանագծերը բանվոր դասակարգի ու գյուղացիության միջև ինչպես և այդ դասակարգերի ու ինտելիգենցիայի միջև, ջնջվում են, իսկ դասակարգային հին բացառիկությունն անհետանում է: Այդ նշանակում է, վոր տարածությունն այդ սոցիալական խմբերի միջև ավելի ու ավելի կրճատվում է»: (Ստալին— «Լենինիզմի հարցերը», եջ՝ 512):

Սոցիալիզմի հաղթանակները, վոր մեր յերկրի ժողովուրդները ձեռք են բերել բանվորների ու գյուղացիների բոլոր թշնամիների դեմ մղված պայքարում, գրի յեն առնված մեծ Ստալինյան Սահմանադրության—աշխարհում ամենադեմոկրատիկ սահմանադրության մեջ, վորը ԽՍՀՄ քաղաքացիների համար որենսդրական կարգով ապահովում է աշխատանքի, հան-

գըստի, կրթության և ծերության հասակում ապահովության իրավունքը:

Սոցիալիզմի համար մղված պայքարում մենք լիկվիդացիայի յենթարկեցինք ազգային ճնշումը, փոխադարձ վստահություն հաստատեցինք ԽՍՀՄ-ում բնակվող ժողովուրդների միջև, պայմաններ ապահովեցինք բոլոր ժողովուրդների կուլտուրայի զարգացման համար, կուլտուրայի, վորը ձևով ազգային է և բովանդակությամբ սոցիալիստական: Արմատապես փոխվել է ԽՍՀՄ ժողովուրդների կերպարանքը, նրանց միջև հաստատվել է բարեկամություն և յեղբայրական համագործակցություն:

«Իբրև արդյունք մենք այժմ ունենք,— ասում է ընկեր Ստալինը,—միանգամայն կազմավորված ու բոլոր փորձություններին դիմացած բազմազգ սոցիալիստական պետություն, վորի ամրությանը կարող էր նախանձել ամեն մի ազգային պետություն աշխարհի ամեն մի մասում»: (Նույն տեղը, էջ՝ 514):

Սոցիալիզմի համար մղված պայքարում բանվոր դասակարգի դիկտատուրայի մեծ նվաճումն է հանդիսանում սոցիալիստական, ժողովրդական ինտելիգենցիայի սե-



փական բազմաթիվ կադրերի ստեղծումը բանվորների, գյուղացիների և ծառայողների միջավայրից: Սոցիալիստական շինարարության պրակտիկան հերքեց II ինտերնացիոնալի կուսակցությունների «տեսաբանների» ամեն տեսակի «փաստարկումները», վորոնք ամեն կերպ պնդում եյին, թե պրոլետարիատը չի կարող իր ձեռքը վերցնել իշխանությունը, իսկ առավել ևս պահել այն իր ձեռքում, յեթե նա նախորոք, կապիտալիստական կարգերի պայմաններում, չստեղծի կազմակերպիչների, ղեկավարների, մասնագետների կադրեր, վորոնք ընդունակ լինեն գլխավորելու արտադրության պրոցեսը: Լենինը ծաղրեց նման «տեսաբաններին» և «սոցիալիստներին», վորոնք ամբողջապես ու լիովին վաճառվել եյին կապիտալին:

Լենինը մատնանշում եր, վոր յեթե սոցիալիստական հեղափոխության հաղթանակի համար պահանջվում է կուլտուրայի վորոշակի մակարդակ, ապա ինչու չսկսել այնպիսի մի ձեռնարկումից, ինչպիսին է կալվածատերերի ու կապիտալիստների իշխանության լիկվիդացիան և պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումը, իսկ այնուհետև սոցիալիստական շինարարու-

*թյան պրոցեսում ստեղծել կուլտուրական կադրեր, յոթմղոնանոց քաղքերում առաջ մղել մասսաների կուլտուրական մակարդակի բարձրացման գործը։*

*Մեր յերկրում սոցիալիզմի կառուցման փորձն ակնառու կերպով ցույց տվեց, վոր խորհրդային իշխանության բազայի վրա յերկրի կառավարումը կազմակերպելու ընդունակ կուլտուրական կադրերի ստեղծման լենինյան-ստալինյան ուղին միակ ճիշտ ուղին է։ Բոլշևիկների կուսակցությունը գնաց լենինյան-ստալինյան ուղիով և կադրերի պատրաստման գործում հասավ մեծասքանչ հաջողությունների, վորոնք հիացմունք են պատճառում ամբողջ առաջավոր, առաջադեմ մարդկությանը։*

*Մեր սոցիալիստական հեղափոխությունը ժողովրդին տվեց վոչ միայն ազատություն, այլև նյութական բարիքներ ապահովեց ունևոր ու կուլտուրական կյանքի աճման համար։ Խորհրդային իշխանության տարիների ընթացքում մեր յերկրում աճել է բազմաթիվ բանվոր դասակարգ, անիծյալ անցյալի համեմատությամբ անչափ բարձրացել է նրա նյութական-կուլտուրական դրությունը։*



*Չքավորները և միջակները, վորոնք մտել են կոլխոզներ, դարձել են ապահովված մարդիկ։ Նյութական դրության աճմանը զուգընթաց աճել է կոլխոզային գյուղացիության կուլտուրան։ Տնտեսության սոցիալիստական սիստեմը բանվորների և կոլխոզնիկների նյութական ու կուլտուրական պայմանները մոտեցրել է միմյանց։ Հակադրությունը քաղաքի և գյուղի միջև ջնջվում է արագ տեմպերով։ Գյուղատնտեսական աշխատանքն ավելի ու ավելի յե վերածվում ինդուստրիալ աշխատանքի մի այլաձևություն։ Աշխատանքը մեր յերկրում պատվի, փառքի, արիության և հերոսության գործ է։*

*Սոցիալիզմի հաղթանակն ամրապնդեց Խորհրդային Միության տնտեսական ու ռազմական հզորությունը, նրա միջազգային հեղինակությունը։ Ընդմիշտ անցել են այն ժամանակները, յերբ իմպերիալիստական ինտերվենտների հրոսակախմբերը հեղեղում եյին մեր յերկիրը, քայքայում եյին արտադրողական ուժերը, կողոպտում եյին բնակչությանը, բնաջնջում եյին ժողովրդի լավագույն զավակներին։ Այժմ մեր զինված ուժերն ընդունակ են վճռական հակահարված տալ ամեն մի թշնամու վորը*

թյան պրոցեսում ստեղծել կուլտուրական կադրեր, յոթմղոնանոց քայլերով առաջ մղել մասսաների կուլտուրական մակարդակի բարձրացման գործը:

Մեր յերկրում սոցիալիզմի կառուցման փորձն ակնառու կերպով ցույց տվեց, վոր խորհրդային իշխանության բազայի վրա յերկրի կառավարումը կազմակերպելու ընդունակ կուլտուրական կադրերի ստեղծման լենինյան-ստալինյան ուղին միակ ճիշտ ուղին ե: Բոլշևիկների կուսակցությունը գնաց լենինյան-ստալինյան ուղիով և կադրերի պատրաստման գործում հասավ մեծասքանչ հաջողությունների, վորոնք հիացմունք են պատճառում ամբողջ առաջավոր, առաջադեմ մարդկությանը:

Մեր սոցիալիստական հեղափոխությունը ժողովրդին տվեց վոչ միայն ազատություն, այլև նյութական բարիքներ ապահովեց ունևոր ու կուլտուրական կյանքի աճման համար: Խորհրդային իշխանության տարիների ընթացքում մեր յերկրում աճել ե բազմաթիվ բանվոր դասակարգ, անիծյալ անցյալի համեմատությամբ անչափ բարձրացել ե նրա նյութական-կուլտուրական դրությունը:



Չքավորները և միջակները, վորոնք մտել են կոլխոզներ, դարձել են ապահովված մարդիկ: Նյութական դրության աճմանը զուգընթաց աճել ե կոլխոզային գյուղացիության կուլտուրան: Տնտեսության սոցիալիստական սիստեմը բանվորների և կոլխոզնիկների նյութական ու կուլտուրական պայմանները մոտեցրել ե միմյանց: Հակադրությունը քաղաքի և գյուղի միջև ջնջվում ե արագ տեմպերով: Գյուղատնտեսական աշխատանքն ավելի ու ավելի յե վերածվում ինդուստրիալ աշխատանքի մի այլաձևության: Աշխատանքը մեր յերկրում պատվի, փառքի, արիության և հերոսության գործ ե:

Սոցիալիզմի հաղթանակն ամրապնդեց Խորհրդային Միության տնտեսական ու ռազմական հզորությունը, նրա միջազգային հեղինակությունը: Ընդմիշտ անցել են այն ժամանակները, յերբ իմպերիալիստական ինտերվենտների հրոսակախմբերը հեղեղում եյին մեր յերկիրը, քայքայում եյին արտադրողական ուժերը, կողոպտում եյին բնակչությանը, բնաջնջում եյին ժողովրդի լավագույն զավակներին: Այժմ մեր զինված ուժերն ընդունակ են վճռական հակահարված տալ ամեն մի թշնամու վոր

կհամարձակվի ձեռք բարձրացնել մեր յերկրի սրբազան հողի վրա:

Հաղթանակած սոցիալիզմի բազայի վրա զարգացան խորհրդային հասարակության այնպիսի շարժիչ ուժերը, ինչպես՝ խորհրդային հասարակության բարոյական-քաղաքական միասնությունը, ժողովուրդների բարեկամությունը և խորհրդային հայրենասիրությունը: Հիմնականում կառուցելով սոցիալիզմը, մեր յերկիրը թևակոխել է զարգացման նոր շրջան,— անդասակարգ սոցիալիստական հասարակության կառուցումն ավարտելու և սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու շրջանը:

Յեվ մենք կկառուցենք կոմունիզմը, կհասնենք նրա լուսապայծառ գագաթներին, չնայած ամեն տեսակի դժվարությունների ու խոչընդոտների: Մեզ ղեկավարում է բոլշևիկների մեծ կուսակցությունը, Լենինի-Ստալինի կուսակցությունը, վորը զինված է հասարակական զարգացման օրենքներով, կոմունիստական հասարակարգի կառուցման լենինյան-ստալինյան թեորիայով: Մարքսիզմ-լենինիզմի գաղափարները կհաղթանակեն ամբողջ աշխարհում: Կապիտալիզմն անխուսափելիո-



րեն կկործանվի պրոլետարական հեղափոխության հարվածների տակ, և մարդկային հասարակությունն ընդմիշտ կազատվի շահագործողներից ու շահագործումից:

---

կհամարձակվի ձեռք բարձրացնել մեր յերկրի սրբազան հողի վրա:

Հաղթանակած սոցիալիզմի բազայի վրա զարգացան խորհրդային հասարակության այնպիսի շարժիչ ուժերը, ինչպես՝ խորհրդային հասարակության բարոյական-քաղաքական միասնությունը, ժողովուրդների բարեկամությունը և խորհրդային հայրենասիրությունը: Հիմնականում կառուցելով սոցիալիզմը, մեր յերկիրը թևակոխել ե զարգացման նոր շրջան,— անդասակարգ սոցիալիստական հասարակության կառուցումն ավարտելու և սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու շրջանը:

Յեվ մենք կկառուցենք կոմունիզմը, կհասնենք նրա լուսապայծառ գագաթներին, չնայած ամեն տեսակի դժվարություններին ու խոչընդոտներին: Մեզ ղեկավարում ե բոլշևիկների մեծ կուսակցությունը, Լենինի-Ստալինի կուսակցությունը, վորը զինված ե հասարակական զարգացման որենքներով, կոմունիստական հասարակարգի կառուցման լենինյան-ստալինյան թեորիայով: Մարքսիզմ-լենինիզմի գաղափարները կհաղթանակեն ամբողջ աշխարհում: Կապիտալիզմն անխուսափելիո-



րեն կկործանվի պրոլետարական հեղափոխության հարվածների տակ, և մարդկային հասարակությունն ընդմիշտ կազատվի շահագործողներից ու շահագործումից:

---

# ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ԳԻՏՈՒԹՅԱՆ ՄԵԾ ԿՈՐԻՖԵՅԸ

Համաշխարհային պատմությունն իմացել է առաջավոր գիտության վոչ քիչ թվով մեծ գործիչների:

Մարդկության ամբողջ պատմության հանճարեղ մտածողների թվում մեծ Լենինը, ինչպես վոր Մարքսն ու Ենգելսը, գրավում է հատուկ տեղ, նրա աշխատությունները ունեն հատկապես մեծ նշանակություն: Դա բացատրվում է ամենից առաջ նրանով, վոր Մարքսը, Ենգելսը, Լենինը և Ստալինը պրոլետարիատի՝ մարդկության պատմության մեջ ամենահեղափոխական դասակարգի տեսաբաններն ու առաջնորդներն են, դասակարգ, վորը միակն է, վոր ընդունակ է վերափոխել աշխարհը կոմունիստական հիմունքներով:

Հասարակությունը հեղափոխական ճանա-



պարհով վերափոխելու պատմական խնդրի կատարման համար անհրաժեշտ է, վոր բանվոր դասակարգը գիտենա հասարակական կյանքի զարգացման օրենքները: Այդ բանը նա քաղում է հասարակության մասին հեղափոխական գիտությունից, վորը ստեղծել են Մարքսն ու Ենգելսը և ել ավելի զարգացրել են Լենինն ու Ստալինը:

Մարքս-լենինյան թեորիան, հանդիսանալով պրոլետարիատի տեսական մեծ զենքը կոմունիզմի հաղթանակի համար մղվող նրա պայքարում, ձեռք է բերում հսկայական ուժ, ինչպիսին մարդկության պատմության մեջ չի իմացել վոչ մի այլ առաջավոր թեորիա: Դրանով ել հենց բացատրվում է, թե ինչու այդ հեղափոխական թեորիայի ստեղծողները—Մարքսը, Ենգելսը, Լենինը և Ստալինը հատուկ տեղ են գրավում առաջավոր գիտության մեծագույն գործիչների շարքում և հատկապես մեծ ազդեցություն են գործում հասարակական զարգացման ընթացքի վրա:

Բոլշևիկյան կուսակցության հզորությունը և արտասովոր կենսականությունը բանվոր դասակարգի ու բոլոր աշխատավորների շահերի համար մղվող նրա հաղթական պայքարի մեջ նրանումն է կա-

յանում, որ նա «հենվում է հասարակության նյութական կյանքի զարգացման պահանջները ճիշտ արտացոլող առաջավոր թեորիայի վրա, այդ թեորիան հասցնում է իրեն վայել բարձրության և իր պարտականությունն է համարում մինչև հատակն օգտագործել թեորիայի մոբիլիզացիայի, կազմակերպող ու փոխակերպող ուժը» (Ստալին, «Լենինիզմի հարցերը», էջ 548, 11-րդ հրատ.):

Բանվոր դասակարգի հեղափոխական գիտության, հասարակության մասին գիտության ստեղծումը բարդ, դժվարին ու տևական պրոցես է: Նրա հիմնադիրները իսկապես տիտանական աշխատանք են կատարել, հարթելով միանգամայն նոր, չհետազոտված ուղիներ: «Գիտության մեջ չկա լայն պողոտա,—գրում էր Մարքսը,— և նա միայն կարող է հասնել նրա լուսապայծառ գագաթներին, ով չվախենալով հոգնելուց, մագլցում է նրա քարքարոտ կածաններով» (Մարքս և Էնգելս: Երկեր, հատ. 17-րդ, էջ 23):

Ստեղծելով բանվոր դասակարգի մինչև վերջ հեղափոխական թեորիան, Մարքսը և Էնգելսն անդուլ կերպով աշխատում էին նրա հետագա զարգացման, կյանքի



կողմից առաջադրվող նորանոր հարցերի մշակման ուղղությամբ:

Մարքսի և Էնգելսի գործը նոր պայմաններում շարունակեցին Լենինը և Ստալինը:

Իր գիտակցական ամբողջ կյանքի ընթացքում Լենինը բացառիկ հաստատակամությամբ, մինչև վերջ հետևողականորեն, պաշտպանում և ել ավելի յեր զարգացնում Մարքսի ու Էնգելսի ուսմունքը: Նա մարքսիզմին վերաբերվում էր վորպես ըստեղծագործական, մշտապես զարգացող գիտություն: Հատուկ ուժով Լենինն ընդգծում էր, որ մարքսիզմի այս կամ այն սկզբունքի հաջող կիրառումը պատմական նոր պայմաններում, անխզելիորեն կապված է նրանց հետագա զարգացման հետ: Հանդես գալով նարոդնիկների, «Լեգալ մարքսիստների», մենշևիկների, 2-րդ Ինտերնացիոնալի օպորտունիստների դեմ, Լենինը ցույց տվեց, որ բանվորական շարժման հաջողությունը միայն հնարավոր է բանվոր դասակարգի պայքարի կոնկրետորեն պատմական պայմանների, այդ պայքարի հեռանկարների բազմակողմանիորեն ուսումնասիրման հիման վրա, մարքսիզմի հետագա զարգացման հիման վրա:

Ռուսական մարքսիստները, «ուզում են մնալ վորպես հետևողական մարքսիստներ, զարգացնելով մարքսիզմի հիմնական դրույթները՝ փոփոխվող պայմաններին ու զանազան յերկրների տեղական առանձնահատկություններին համապատասխան, և ել ավելի մշակելով Մարքսի դիալեկտիկական մատերիալիզմի ու քաղաքա-տնտեսական ուսմունքի թեորիան» (Լենին, Յերկեր հատ. III, եջ՝ 499):

Հանդես գալով պատմական նոր դարաշրջանում, իմպերիալիզմի և պրոլետարական հեղափոխությունների դարաշրջանում, Լենինը համարձակորեն հարթում եր առաջավոր, հեղափոխական գիտության նոր ուղիներ, հաղթահարելով բոլոր ու ամեն տեսակի խոչընդոտները:

Մարքսիզմի բոլոր բնագավառներում՝ քաղաքատնտեսության, գիտական սոցիալիզմի ու դիալեկտիկական մատերիալիզմի բնագավառում Լենինը մտցրեց նոր շատ բան, հարթելով բանվոր դասակարգի հեղափոխական գիտության հետագա զարգացման նորանոր ուղիներ:

Նա Մարքսի և Ենգելսի տնտեսագիտական ուսմունքը հարստացրեց նոր տվյալներով ու հետևություններով:



Իմպերիալիզմի բազմակողմանի և խորն ուսումնասիրման հիման վրա, կապիտալիզմի զարգացման անհամաչափության իր բացահայտած օրենքի հիման վրա, անհամաչափություն, վորը խիստ կերպով սրվեց իմպերիալիստական դարաշրջանում, Լենինը յեկավ իր այն հանճարեղ հետևության, վոր «միանգամայն հնարավոր ե իմպերիալիստական ճակատի ճեղքումը պրոլետարիատի կողմից վորևե մի տեղում կամ մի քանի տեղերում, վոր հնարավոր ե սոցիալիզմի հաղթանակը նախապես մի քանի յերկրներում, կամ նույնիսկ առանձին վերցրած մեկ յերկրում...» («Համ. Կ(բ)Կ պատմության համառոտ դասընթաց», եջ՝ 228, հայ. հրատ.):

Մեկ յերկրում սոցիալիզմի կառուցման հնարավորության լենինյան թեորիան, վորը հետագայում զարգացրեց ընկեր Ստալինը, փայլուն կերպով կենսագործված ե մեր յերկրում:

Ել ավելի զարգացնելով մարքսիստական ուսմունքը հեղափոխության և պրոլետարիատի դիկտատուրայի մասին, Լենինը մշակեց բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունը սոցիալիստականի վերածելու թեորիան: Տեսականորեն ընդհանրացնելով

հեղափոխական պայքարի պրակտիկան և ամենից առաջ ռուսական բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունների ամենահարուստ փորձը, Լենինը բացահայտեց Խորհուրդները, որպես պրոլետարիատի դիկտատուրայի ձև: Նա ցույց տվեց, որ Խորհրդային իշխանությունը, որպես պրոլետարիատի դիկտատուրայի պետական ձև, ունի հիմնական խնդիր՝ կապիտալիստական հասարակարգի հեղափոխականորեն վերափոխումը սոցիալիստականի: Դրան զուգընթաց, Լենինը ցույց տվեց սոցիալիստական շինարարության հիմնական ուղիները:

Լենինի գաղափարները սոցիալիստական ինդուստրիայի անդադար զարգացման, սոցիալիզմի պայմաններում կոոպերացիայի դերի, գյուղացիության հետ բանվոր դասակարգի դաշինքի մասին, ել ավելի զարգացրեց ընկեր Ստալինը, դրանք դարձնելով ծավալուն ուսմունք յերկրի ինդուստրիալիզացիայի և գյուղատնտեսության կոլեկտիվացման մասին: ԽՍՀՄ-ում սոցիալիստական շինարարության պրակտիկան փայլուն կերպով հաստատեց սոցիալիզմի կառուցման ուղիների ու ձևերի



մասին լենինյան-ստալինյան ուսմունքի ճշտությունը:

Մարքսիստական գիտության մեծ կորիֆեյ Լենինը հանճարեղ կերպով զարգացրեց այդ գիտության բոլոր կողմերը, այն բարձրացրեց ել ավելի բարձր աստիճանի: Լենինը չափազանց շատ ուշադրություն եր նվիրում մարքսիստական կուսակցության տեսական հիմունքների—դիալեկտիկական ու պատմական մատերիալիզմի մշակմանը:

Մարքսիստական փիլիսոփայության բոլոր հարցերի վրա նյութական աշխարհի շարժման ու զարգացման օրենքների մասին ուսմունքի մեջ, դիալեկտիկական մատերիալիզմի ճանաչողության թեորիայի հարցերում, պատմական մատերիալիզմի բնագավառում—Լենինը թողել է անջնջելի հետք: Լենինի անվան հետ է կապված նոր, բարձրագույն աստիճանը մարքսիստական փիլիսոփայության զարգացման մեջ:

Մատերիալիստական դիալեկտիկան, որպես գիտության զարգացման մասին, նրա ամենալիակատար, խոր ու բազմակողմանի ձևով հանդիսանում է տեսական մեծագույն մի ընդհանրացում, որին իրակա-

նացրին Մարքսն ու Էնգելսը: Լենինն անդուլ կերպով եւ ավելի խոր զարգացնում այդ հանճարեղ ուսմունքը, որը բոլշևիկներին հնարավորություն է տալիս գրավելու ամենաանառիկ ամրոցները: Նա բազմակողմանի քննադատության յենթարկեց հակադիտական, մետաֆիզիկական հայացքն աշխարհի նկատմամբ, հայացք, որն ընդունում է բոլոր առարկաների «բացարձակ» անփոփոխականությունն ու մեկուսացվածությունը: Դրան հակադրելով դիալեկտիկական-մատերիալիստական հայացքը, որպես միակ մինչև վերջ գիտական հայացք ռեալ կերպով գոյություն ունեցող աշխարհի նկատմամբ, Լենինը ցույց տվեց, որ օբյեկտիվ աշխարհում ամեն բան գտնվում է մշտական զարգացման վիճակում, որ այդ զարգացման աղբյուրն է հակասությունների պայքարը: Հակադրությունների միասնության և պայքարի ուսմունքը Լենինը համարում էր մատերիալիստական դիալեկտիկայի կորիզը:

Պայքարելով բուրժուական և մանրբուրժուական փիլիսոփայության դեմ, Լենինը մշակեց, կոնկրետացրեց Մարքսի և Էնգելսի փիլիսոփայության հիմնական



սկզբունքներն ու դրույթները, հարստացնելով դրանք նոր տվյալներով ու հետևություններով:

Լենինի «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» աշխատությունը մարքսիստական փիլիսոփայության մեծագույն յերկերից մեկն է: Այդ աշխատության մեջ հանճարեղ պարզությամբ լուծված է բոլշևիկյան կուսակցության թեորետիկական նախապատրաստման խնդիրը, մերկացված և մինչև վերջ ջախջախված են մախիստներն ու դիալեկտիկական մատերիալիզմի այլ թշնամիները:

Լենինը բանվոր դասակարգի բազմակողմանիորեն զարգացած առաջնորդն ու մտածողն էր: Նա իր տեսական գործունեությունը չէր սահմանափակում միայն հասարակության մասին գիտությամբ, այլ աշխուժորեն հետաքրքրվում և հանգամանորեն ուսումնասիրում էր նաև գիտության այլ բնագավառների, հատկապես բնական գիտությունների, նորագույն նվաճումները:

Ինչպես որ իր ուսուցիչները—Մարքսը և Էնգելսը,—Լենինը գտնում էր, որ բանվոր դասակարգի տեսաբանները պետք է զգայուն կերպով ունկնդրեն այն ամ-

բողջ նորին, որը կատարվում է բնագիտության մեջ, պետք է տեսականորեն ընդհանրացնեն նրա նվաճումները ու հայտնագործումները, դրանք դարձնեն հեղափոխական ժողովրդական մասսաների սեփականությունը: «...Ոչ այլ ոք, բայց յեթե Լենինը,—ասում է ընկեր Ստալինը,—ձեռնարկեց իրագործելու լրջագույն մի խնդիր, այն է՝ ընդհանրացնել այն ամենակարևորը մատերիալիստական փիլիսոփայության վերաբերյալ, ինչ տվել է գիտությունն Ենգելսից մինչև Լենինը ձգվող ժամանակաշրջանում և ամենակողմանի քննադատության յենթարկել մարքսիստների շրջանում գոյություն ունեցող հակամատերիալիստական հոսանքները: Ենգելսն ասում էր, որ «ամեն մի նոր մեծ հայտնագործության դեպքում հարկ է լինում, որ մատերիալիզմը նոր տեսք ընդունի»: Հայտնի յե, որ այդ խնդիրն իր ժամանակի համար իրագործեց ոչ այլ ոք, բայց յեթե Լենինն իր «Մատերիալիզմ և եմպիրիոկրիտիցիզմ» յերևելի գրքում» («Լենինիզմի հարցերը», եջ՝ 14, 11-րդ հրատ.):

Լենինի «Մատերիալիզմ և եմպիրիոկրիտիցիզմ» գիրքը ոչ միայն հանդիսանում



է բուրժուական փիլիսոփայության, հատկապես մախիզմի ջախջախիչ քննադատությունը, և դիալեկտիկական ու պատմական մատերիալիզմի — մարքսիզմի տեսական հիմքի պաշտպանությունը, այլև մատերիալիստական ընդհանրացումը նրա մեջ յեղած ամբողջ կարևորի ու եյականի, ինչ որ ձեռք է բերել գիտությունն ու ամենից առաջ բնագիտությունը Ենգելսի մահից հետո:

Լենինի այս գիրքը բազմակողմանիորեն բացահայտեց բնագիտության մեջ տեղի ունեցող խոր պրոցեսները, վերլուծման յենթարկեց այն ճգնաժամի պատճառները, որը կապված է 19-րդ դարի վերջերի նորագույն հայտնագործումների հետ, մատնանշեց այդ ճգնաժամի հաղթահարման ուղիները: 19-րդ դարի վերջերին և 20-րդ դարի սկզբներին բնության մասին յեղած գիտության մեջ կատարվեցին խորագույն փոփոխություններ: Բնագիտության մեջ կատարված նորագույն հայտնագործումներն որակարգի մեջ դրին մի շարք նոր հարցեր, «որոնք պետք է «կարգավորեր» դիալեկտիկական մատերիալիզմը»: Տեսականորեն ընդհանրացնելով բնագիտության բնագավառում ձեռք բեր-

բողջ նորին, վորը կատարվում է բնագիտության մեջ, պետք է տեսականորեն ընդհանրացնեն նրա նվաճումները ու հայտնագործումները, դրանք դարձնեն հեղափոխական ժողովրդական մասսաների սեփականությունը: «...Վոչ այլ վոք, բայց յեթե Լենինը,—ասում է ընկեր Ստալինը,—ձեռնարկեց իրագործելու մրջագույն մի խնդիր, այն է՝ ընդհանրացնել այն ամենակարևորը մատերիալիստական փիլիսոփայության վերաբերյալ, ինչ տվել է գիտությունն Ենգելսից մինչև Լենինը ձգվող ժամանակաշրջանում և ամենակողմանի քննադատության յենթարկել մարքսիստների շրջանում գոյություն ունեցող հակամատերիալիստական հոսանքները: Ենգելսն ասում եր, վոր «ամեն մի նոր մեծ հայտնագործության դեպքում հարկ է լինում, վոր մատերիալիզմը նոր տեսք ընդունի»: Հայտնի յե, վոր այդ խնդիրն իր ժամանակի համար իրագործեց վոչ այլ վոք, բայց յեթե Լենինն իր «Մատերիալիզմ և եմպիրիոկրիտիցիզմ» յերևելի գրքում» («Լենինիզմի հարցերը», եջ՝ 14, 11-րդ հրատ.):

Լենինի «Մատերիալիզմ և եմպիրիոկրիտիցիզմ» գիրքը վոչ միայն հանդիսանում



է բուրժուական փիլիսոփայության, հատկապես մախիզմի ջախջախիչ քննադատությունը, և դիալեկտիկական ու պատմական մատերիալիզմի — մարքսիզմի տեսական հիմքի պաշտպանությունը, այլև մատերիալիստական ընդհանրացումը նրա մեջ յեղած ամբողջ կարևորի ու եյականի, ինչ վոր ձեռք է բերել գիտությունն ու ամենից առաջ բնագիտությունը Ենգելսի մահից հետո:

Լենինի այս գիրքը բազմակողմանիորեն բացահայտեց բնագիտության մեջ տեղի ունեցող խոր պրոցեսները, վերլուծման յենթարկեց այն ճգնաժամի պատճառները, վորը կապված է 19-րդ դարի վերջերի նորագույն հայտնագործումների հետ, մատնանշեց այդ ճգնաժամի հաղթահարման ուղիները: 19-րդ դարի վերջերին և 20-րդ դարի սկզբներին բնության մասին յեղած գիտության մեջ կատարվեցին խոշորագույն փոփոխություններ: Բնագիտության մեջ կատարված նորագույն հայտնագործումներն որակարգի մեջ դրին մի շարք նոր հարցեր, «վորոնք պետք է «կարգավորեր» դիալեկտիկական մատերիալիզմը»: Տեսականորեն ընդհանրացնելով բնագիտության բնագավառում ձեռք բեր-

ված նոր նվաճումները, Լենինը ցույց տվեց, վոր դրանք փայլուն կերպով հաստատում են դիալեկտիկական մատերիալիզմի ճշտությունը:

Դրան զուգընթաց Լենինը մանրամասն պարզեց բուրժուական ֆիզիկայի ճգնաժամի էությունը և մատնանշեց այն փակուղուց դուրս գալու ուղիները, վորի մեջ նրան գցել եյին իդեալիստ փիլիսոփաները: Հարկավոր է, սովորեցնում էր Լենինը, կանգնել դիալեկտիկական մատերիալիզմի դիրքերի վրա: Ֆիզիկայի, ինչպես նաև ժամանակակից ամբողջ բնագիտության մատերիալիստական վոգին, ընդգծում էր Լենինը, կհաղթի բոլոր ու ամեն տեսակի ճգնաժամերը, միայն թե այն անխախտ պայմանով, յեթե մետաֆիզիկական մատերիալիզմը փոխարինենք դիալեկտիկական մատերիալիզմով: Միայն մարքսիստական մատերիալիզմի ուղիների վրա, անողոքաբար մերկացնելով իդեալիզմի և այլ ռեակցիոն հայացքները, կարող է լուծվել ճգնաժամը բնագիտության մեջ:

Նորագույն գիտական տվյալների լենինյան ընդհանրացումներն անգնահատելի նշանակություն ունեցան գիտության հետագա զարգացման համար, ոգնեցին վե-



րացնել բնագետների մեջ տիրող տարընթացությունն ու յերերումները, մարքսիստական մատերիալիզմը բարձրացրին նոր աստիճանի:

Լենինյան ընդհանրացումներն ու հետևությունները փայլուն հաստատում գտան բնագիտության հետագա զարգացման մեջ: Լենինը հանճարեղ կերպով կանխատեսեց գիտության հետագա զարգացման ուղիները: Խորհրդային գիտության հիանալի հաջողությունները ամենայն ակնբախությամբ խոսում են այդ մասին:

Լենինը մարքսիզմին մոտենում էր վորպես ստեղծագործական գիտության: Նա մատնանշում էր, վոր նոր եպոխը՝ գիտությունների զարգացման մեջ, բերեց նոր փաստեր, վորոնք չգիտեյին և չեյին կարող գիտենալ Մարքսն ու Ենգելսը: Մարքսիզմի հետևորդների խնդիրն է այդ փաստերին մոտենալ յելնելով մարքսիստական մեթոդի էությունից, և վոչ թե կառչել մարքսիզմի տառին, հնացած դրույթներին:

Ինչպես վոր հեղափոխական գիտության, այնպես և իր հեղափոխական գործունեության մեջ Լենինը միշտ հանդես էր գալիս վորպես մեծ նովատոր, վորը հա-

մարձակորեն փշրելով հին տրադիցիաները
հին հայացքները: Ընկեր Ստալինը տա-
լիս է Լենինի մեծ կերպարը, վորպես հե-
ղափոխական գիտության կորիֆեյ: 1938
թվի մայիսի 17-ին Կրեմլում բարձրագույն
դպրոցի աշխատողների ընդունելության
արտասանած ճառի մեջ ընկեր Ստալինն
ասաց.

«Գիտությունն իր զարգացման մեջ ճա-
նաչում է վոչ քիչ թվով քաջարի մարդ-
կանց, վորոնք կարողանում եյին փշրել
հինը և ստեղծել նորը, չնայած ամեն տե-
սակ խոչընդոտներին, հակառակ ամեն
բանի: Գիտության այնպիսի քաջարիներ,
ինչպես Գալիլեյը, Դարվինը և շատ ու-
րիշները, հանրածանոթ են: Ցես կուզեյի
կանգ առնել գիտության այնպիսի կորի-
ֆեյներից մեկի վրա, վորը միևնույն
ժամանակ հանդիսանում է մեր ժամանա-
կի մեծագույն մարդը: Ցես նկատի ունեմ
Լենինին, մեր ուսուցչին, մեր դաստիա-
րակին: Հիշեցեք 1917 թիվը: Ռուսաստանի
հասարակական զարգացման գիտական ա-
նալիզի հիման վրա, միջազգային դրության
գիտական անալիզի հիման վրա Լենինն
այն ժամանակ յեկավ այն յեզրակացու-
թյան, վոր դրությունից միակ յելքը հան-



դիսանում է սոցիալիզմի հաղթանակը
Ռուսաստանում: Այդ ավելի քան-անսպա-
սելի յեզրակացություն եր այն ժամանակ-
վա գիտության շատ մարդկանց համար:
Պլեխանովը, գիտության աչքի ընկնող
մարդկանցից մեկը, այն ժամանակ արհա-
մարհանքով եր խոսում Լենինի մասին՝
պնդելով թե Լենինը գտնվում է «զա-
ռանցանքի մեջ»: Գիտության այլ, վոչ
պակաս հայտնի մարդիկ պնդում եյին, թե
«Լենինը խելագարվել է», թե նրան հար-
կավոր է թաքցնել վորքան հեռու տեղ:
Այն ժամանակ Լենինի դեմ վոռնում եյին
գիտության բոլոր ու ամեն տեսակ մար-
դիկ, վորպես մի մարդու, վորը քանդում
է գիտությունը: Բայց Լենինը չվախեցավ
հոսանքին դեմ գնալուց, քարացածության
դեմ գնալուց: Ցեվ Լենինը հաղթեց»:

Բանվոր դասակարգի առաջնորդ և տե-
սաբան, հեղափոխական գիտության մեծ
կորիֆեյ Վլադիմիր Իլյիչ Լենինը խոր-
հրդային ժողովրդի և ամբողջ աշխարհի
աշխատավորների համար թողել է անգնա-
հատելի ժառանգություն: Նա թողել է իր
ստեղծած և բանվոր դասակարգի թշնա-
միների դեմ անհաշտ պայքարում կոփված
բոլշևիկյան կուսակցությունը, նա թողել

և իր մեծագույն ուսմունքը—լենինիզմը։

Կուսակցության դրոշը Լենինի ձեռքից ընդունեց և վեր բարձրացրեց աշխարհի վրա նրա մեծ աշակերտ և նրա գործի շարունակող ընկեր Ստալինը։ Նա նույնպես, ինչպես վոր Լենինը, զարգացնում և առաջ է մղում մարքսիստական գիտությունը։ Ստալինի հանճարեղ առաջնորդությամբ, մարքս-լենինյան անպարտելի ուսմունքի դրոշի ներքո, մենք հասանք սոցիալիզմի համաշխարհային պատմական հաղթանակին։ Լենինյան-ստալինյան գաղափարները դարձել են կազմակերպող և մոբիլիզացիայի ենթարկող մեծագույն ուժ։ Նրանք կհասցնեն կոմունիզմի հաղթանակին՝ ամբողջ աշխարհում։

---



ԴԻՏՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Պատ. խմբագիր՝ Դ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Պատ. քարտուղար՝ Հ. ՍԱՐԳՍՅԱՆ

Սրբագրիչ՝ ՀԱՐ. ՓԱՐԻԿՅԱՆ

Գլավլիտի լիազոր Չ—1105

Պատվեր՝ 253, տիրաժ 7950

Հանձնված է արտադրության 16/IV 1940 թ.

Ստորագրված է տպագրության 20/IV 1940 թ.

---

Հայկական ՍՍՀ Ժողկոմխորհին կից Գլ. Հ.
Հրատարակչության տպարան, Երևան